

Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

№ 8
ԱՊՐԻԼ
1964

ՀԿԿ Կենտկոմի գաղափարական աշխատանքի բաժին

Լույս է տեսնում ամիսը երկու անգամ

# Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎԻ ԾՆՆԴՅԱՆ 70-ԱՄՅԱԿԸ

Լրացավ հավատարիմ լենինյան, կոմունիստական պարտիայի և սովետական պետության ականավոր գործիչ ու ղեկավար Ն. Ս. Խրուշչովի ծննդյան 70-ամյակը:

Նիկիտա Սերգեևիչ Խրուշչովը ծնվել է 1894 թվականին, ապրիլի 17-ին նախկին Կուրսկի նահանգի Կալինովկա գյուղում, հանքափորի ընտանիքում: Շատ վաղ է սկսվել նրա աշխատանքային կյանքը: Սկզբից գյուղում նա աշխատել է հովիվ, իսկ հետագայում՝ Դոնբասի հանքերում ու գործարաններում՝ փականագործ: Սկզբնական կրթությունը նա ձեռք է բերել գլխավորապես ինքնուսուցմամբ: Պարտիայի մեջ ընդունվել է 1918 թվականին: Ընկ. Ն. Ս. Խրուշչովը եղել է քաղաքացիական կռիվների ակտիվ մասնակից: Սպիտակ գվարդիականների և մյուս թշնամիների դեմ մարտնչել է հարավային ֆրոնտում: Քաղաքացիական կռիվներից անմիջապես հետո նա վերադարձել է հարազատ Դոնբասը և ձեռնամուխ եղել մեր երկրում ծավալված ժողովրդական տնտեսության վերականգնման ու սոցիալիստական շինարարության աշխատանքներին:

Մեր երկրի համար այդ դժվարին օրերին ընկ. Ն. Ս. Խրուշչովը աշխատել է Դոնբասի հանքերում, որտեղ և ընտրվել է պարտիական ղեկավար աշխատանքի: Շուտով, 1929 թվականին նա մեկնում է Մոսկվա ուսման, որտեղ ընդունվում է արդյունաբերական ակադեմիա և

մեծ հաջողությամբ սովորում: Ուսումն ավարտելուց հետո ընկ. Ն. Ս. Խրուշչովը նորից գործուղվում է պարտիական աշխատանքի: Նա աշխատում է Մոսկվայում, իսկ հետագայում Ուկրաինայում: Սկսած 1934 թվականից ընկ. Ն. Ս. Խրուշչովը հանդիսանում է պարտիայի Կենտրոնական կոմիտեի անդամ: 1953 թվականին նա ընտրվել է ՍՄԿՊ Կենտկոմի առաջին քարտուղար, իսկ 1958 թվականին նշանակվել ՍՍՌՄ Մինիստրների սովետի նախագահ:

Մեծ են ընկ. Ն. Ս. Խրուշչովի ծառայությունները հատկապես Սովետական Միության Հայրենական մեծ պատերազմի հաղթանակի գործում: Նա որպես Ռազմական խորհրդի անդամ գտնվում էր գործող բանակում և ղեկավարում դաժան թշնամու դեմ մղվող ճակատամարտերը: Երբեք չի մոռացվի նրա մեծ ծառայությունները Վոլգայի մոտ գերմանա-ֆաշիստական զորքերի ջախջախման, Ուկրաինայի ազատագրման գործում: Հետպատերազմյան ժամանակամիջոցում ընկ. Ն. Ս. Խրուշչովը եռանդուն աշխատանք ծավալեց ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության վերականգնման ու հետագա զարգացման համար: Նրա հմուտ նախաձեռնությունները, հարուստ քաղաքական փորձը, աննկուն գործունեությունը, կազմակերպական տաղանդը և թեորիական խոր գիտելիքները ի սպաս դրվեցին մեր երկրի ծաղկման և բարգավաճման գործին:

Ընկ. Ն. Ս. Խրուշչովի բեղմնավոր գործունեությունն է՛լ ավելի ծավալվեց վերջին տասնամյակում: Նրա գլխավորած լենինյան Կենտրոնական կոմիտեի, մեր ամբողջ պարտիայի ղեկավարությամբ Սովետական Միության էկոնոմիկան ու կուլտուրան շեշտակի վերելք են ապրում, հաջողությամբ լուծվում է կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման հարցը: Խոշոր աշխատանք է կատարվում քիմիական արդյունաբերության արագ զարգացման, գյուղատնտեսության արտադրության վերելքի և ժողովրդի բարեկեցության բարձրացման գործում:

Երկրում շնորհալի կերպով իրականացվել է արդյունաբերության, գյուղատնտեսության ու շինարարության ղեկավարման վերակառուցումը, որն արդեն իր շոշա-





փելի արդյունքներն է տվել, ունեցել է ոչ միայն տնտեսական, այլև քաղաքական նշանակություն: Խորտակված են գործի նկատմամբ գերատեսչական-բյուրոկրատական մոտեցման բազմաթիվ հնացած ձևեր, որոնք ստեղծվել էին Ստալինի անձի պաշտամունքի ժամանակաշրջանում և դարձել էին երկրի էկոնոմիկայի զարգացման լուրջ արգելակ:

Ընկեր Ն. Ս. Խրուշչովի ակտիվ մասնակցությամբ պարտիան վիթխարի աշխատանք կատարեց անձի պաշտամունքի հետևանքները հաղթահարելու, պարտիական կյանքի լենինյան նորմաները և ղեկավարման սկզբունքները զարգացնելու ուղղությամբ: Ինչպես հայտնի է, պարտիայի XX համագումարը դատապարտելով մարքսիզմ-լենինիզմի ոգուն խորթ անձի պաշտամունքը, լայն ասպարեզ բացեց պարտիայի ու ժողովրդի ստեղծագործական ուժերի համար, նպաստեց մասսաների հետ պարտիայի կապերի ընդլայնմանն ու ամրապնդմանը և նրա մարտունակության բարձրացմանը:

Սովետական պետության և ժողովրդի առջև ունեցած մեծ ծառայությունների համար ընկ. Ն. Ս. Խրուշչովին երեք անգամ շնորհվել է Սոցիալիստական աշխատանքի հերոսի կոչում: Խաղաղությունն ամրապնդելու համար նրան տրվել է Խաղաղության միջազգային լենինյան մրցանակ:

Ն. Ս. Խրուշչովի, ինչպես նաև սովետական մյուս ղեկավարների կյանքի ուղին ցայտուն կերպով հաստատում է սովետական կարգերի և կոմունիստական պարտիայի խոր ժողովրդականությունը:

———

### ՆՅՈՒԹԵՐ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ԵՎ ԶԵԿՈՒՅՑՈՒՄՆԵՐԻ ՀԱՄԱՐ

# ՄԱՅԻՍԻ ՄԵԿԸ

Վլադիմիր Իլյիչ Լենինը, մեր հարազատ կոմունիստական պարտիայի ստեղծողն ու մեծ առաջնորդը, միշտ բարձր է գնահատել աշխատավորների միջազգային համերաշխության օրը՝ Մայիսի մեկը։ Դեռևս 60 տարի առաջ նա նշել է, որ Մայիսի մեկի օրը բոլոր երկրների բանվորները տոնում են իրենց արթնացումը դեպի գիտակից կյանք, տոնում են իրենց միավորումը ամեն մի բռնության դեմ և մարդու ձեռքով մարդու ամեն մի ճնշման դեմ մղվող պայքարում, միլիոնավոր աշխատավորներին քաղցից, աղքատությունից ու ստորացումից ազատագրելու պայքարում։

«Երկու աշխարհ կանգնած են իրար դեմ այդ մեծ պայքարում. կապիտալի աշխարհը և աշխատանքի աշխարհը, շահագործման ու ստրկության աշխարհը, եղբայրության ու ազատության աշխարհը»,— ասել է Վ. Ի. Լենինը։

Համայն աշխարհի աշխատավորների մեծ տոնի, Մայիսի մեկի առթիվ Վ. Ի. Լենինը գրել է բազմաթիվ թռուցիկներ, բրոշյուրներ և աշխատություններ, որտեղ պարզաբանել է սոցիալիզմի մեկ ընդհանուր դրոշի ներքո պայքարելու, մի եղբայրական միության մեջ միավորվելու անհրաժեշտությունը։

1905 թվականի ռևոլյուցիոն մեծ իրադարձությունների օրերին, ապրիլի 25-ին մեծ առաջնորդը գրում է «Մայիսի մեկը» խորագրով բրոշյուրը, որը պայքարի ու հաղթանակի իսկական ծրագիր է։ Տալով ինքնակալության դեմ պայքարի կոնկրետ պլան, Վ. Ի. Լենինը խնդիր է դնում եղբայրական բարեկամություն հաստատել տարբեր ազգությունների բանվորների միջև։ «Կորչի թշնամանքը զանազան ազգությունների կամ զանազան կրոնների բանվորների միջև։ Այդպիսի թշնամանքը ձեռնտու է միայն կողոպտիչներին ու բռնակալներին, որոնք ապրում են պրոլետարիատի խավարամտության ու անջատվածության շնորհիվ»,— սովորեցնում էր Վ. Ի. Լենինը։

Մայիսի մեկն իրավամբ համարվում է ամբողջ աշխարհի աշխատավորների միջազգային տոնը, նրանց եղբայրության և ազատության տոնը։ Այդ օրը աշխատանքի մարդիկ մեծ հանդիսավորությամբ կրկին ու կրկին նշում են իրենց միասնությունն ու համերաշխությունը, իրենց անհողդողդ կամքը խաղաղությունը պահպանելու, կապիտալի դեմ պայքարելու համար։

Աշխատավորների միջազգային համերաշխության օրը՝ Մայիսի մեկը ունի երկար տարիների փառապանծ պատմություն։ Այն տարբեր ժամանակներում, տարբեր երկրներում տոնվել է տարբեր ձևերով։ 1886 թվականին, մայիսմեկյան մի օր, այլևս չդիմանալով ձեռնարկատերերի գազանային շահագործմանը, Չիկագո քաղաքի բանվորները պայքարի դրոշ բարձրացրին ամերիկյան գիշատիչ իմպերիալիզմի դեմ։ Բանվորները մասսայաբար դադարեցրին աշխատանքը և հայտարարեցին գործադուլ, գումարեցին միտինգ, որին մասնակցեցին 350 հազար բանվորներ և պահանջեցին վերջ տալ բանվորների անմարդկային շահագործմանը, սահմանել ութժամյա աշխատանքային օր։ Չիկագոյի բանվորների օրինակին հետևեցին ԱՄՆ-ի շատ ձեռնարկությունների բանվորներ։

Գազազած ամերիկյան իմպերիալիստները բանվորների արյունով ողողեցին Չիկագո քաղաքի փողոցները։ Փոխանակ բավարարելու բազմաչարչար, կեղեքված ու տանջված բանվորների արդարացի ու օրինական պահանջները, նրանք զինված բանդաներով հարձակվեցին ցուցարարների վրա, սպանեցին ու դաժան ծեծի ենթարկեցին նրանցից շատերին։ Միտինգը ցրելուց հետո ամերիկյան կառավարությունը մահվան, բանտարկության և տաժանակրության դատապարտեց բազմաթիվ գործադուլավորների և ցուցարարների։

ԱՄՆ-ում տեղի ունեցած 1886 թվականի մայիսյան դեպքերը ամբողջ աշխարհի աշխատավորներին ցույց տվեցին, որ անհրաժեշտ է միավորվել՝ կապիտալիստական կարգերի դեմ պայքարելու համար։ Այդ էր պատճառը, որ ամբողջ աշխարհի աշխատավորները ջերմորեն արձագանքեցին 1889 թվականին տեղի ունեցած II Ինտերնացիոնալի Փարիզի կոնգրեսի կոչին՝ ի հիշատակ Չիկագոյի դեպքերի ամեն տարի նշել Մայիսի մեկի օրը որպես աշխատանքի մարդկանց համաշխարհային ռևոլյուցիոն տոն, ամբողջ աշխարհի պրոլետարիատի մարտական ուժերի ստուգատեսի օր։ Այդ օրվանից մինչև այժմ, ամեն տարի աշխատավորները տոնում են Մայիսի մեկը՝ աշխատանքի ու պայքարի իրենց տոնը։

Մայիսի մեկը Ռուսաստանում առաջին անգամ տոնվել է 1890 թվականին, այն վեր է ածվել հզոր ցույցի ընդդեմ ցարական ինքնակալության, կալվածատերերի ու կապիտալիստների դաժան շահագործման։ Հերոսական ռուսական պրոլետարիատը բազմիցս անհամար զոհեր է տվել հանուն ազատության, հանուն պայծառ ապագայի։ Ռուսաստանում շահագործող դասակարգերի դեմ աշխատավորների անմոռաց պայքարի բազմաթիվ դեպքեր կապված են Մայիսի մեկի օրվա հետ։ Մեծ Հոկտեմբերի հաղթանակից հետո մեր երկրի աշխատավորներն ավելի ուժգին պայքար ծավալեցին հանուն ամբողջ աշխարհի աշխատավորների համերաշխության, հանուն խաղաղության և ստեղծագործ աշխատանքի։

Սովետական կարգերը ցույց տվեցին, թե ինչ հրաշք կարող են գործել աշխատավորները՝ ազատագրվելով կապիտալի լծից։ Ինչպես միշտ, այնպես էլ այս տարի մեր երկրի աշխատավորները նշանակալից հաջողություններով դիմավորեցին Մայիսի մեկը։ Սրբությամբ կենսագործելով ՍՄԿՊ XXII համագումարի պատմական որոշումները, պարտիայի նոր ծրագիրը, նրանք ավելի նշանակալից աշխատանք կատարեցին կոմունիզմի նյութատեխնիկական բազան ստեղծելու գործում։ Սովետական Միության արդյունաբերության համախառն արտադրանքը վերջին տասը տարում աճել է 2,7 անգամ։ Գրեթե երկու անգամ բարձրացել է աշխատանքի արտադրողականությունը։ Կառուցվել են 8.500 նոր խոշոր ձեռնարկություններ։ 1963 թվականին, 1953 թվականի համեմատությամբ, չուգունի ձուլումը ավելացավ 2,1 անգամ, պողպատինը՝ 2,1 անգամ։ Եթե 1953 թվականին ՍՍՌՄ-ում մեքենաշինության և մետաղամշակության արտադրանքը ունեցել էր 12 միլիարդ ռուբլու արժողություն, ապա 1963 թվականին այն հասավ 48 միլիարդ ռուբլու, այսինքն 4 անգամ ավելի։ Եթե 1953 թվականին արտադրվել էր 134,3 միլիարդ կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա, ապա 1963 թվականին այն հասավ 411,6 միլիարդ կիլովատ-ժամի, այսինքն 3,1 անգամ ավելի։ Անցյալ տարի, 1953 թվականի համեմատությամբ, նավթի հանույթն ավելացավ 152,7 միլիոն տոննայով, կամ 3,9 անգամով, գազինը՝ 83,6 միլիարդ խորանարդ մետրով, կամ 11 անգամով, ածխինը՝ 210 միլիոն տոննայով, կամ 1,7 անգամով, հանքային պարարտանյութերինը՝ 13 միլիոն տոննայով, կամ 2,9 անգամով։ Անցյալ տարի ՍՍՌՄ-ում արտա-



դրվեցին 580 հազար տոննա սինթետիկ ձյութեր և պլաստմասսա, 1953 թվականի 103,6 հազար տոննայի դիմաց։ Նույն ժամանակամիջոցում քիմիական թելերի արտադրությունն ավելացավ 5 անգամ, ցեմենտինը՝ 3,8 անգամ։

Ուրախալի է իմանալ, որ միայն անցյալ տարի արդյունաբերական արտադրանքի աճը ՍՍՌՄ-ում կազմեց 8,5 տոկոս։ Զգալի գերազանցումով կատարվեցին յոթնամյա պլանի առաջադրանքները։ Արդյունաբերության համախառն արտադրանքն ավելացավ 58 տոկոսով, հինգ տարվա համար նախատեսված 51 տոկոսի փոխարեն. յոթնամյակի առաջադրանքներից դուրս թողարկված է շուրջ 37 միլիարդ ռուբլու արտադրանք։

Արդյունաբերության աշխատողների նշանակալից հաջողությունն այն է, որ նրանք ոչ միայն կատարեցին յոթնամյակի հինգ տարվա համար նախատեսված պլանը, այլև պլանից դուրս երկրին տվեցին գրեթե 3 միլիոն տոննա հանքային պարարտանյութ, 23 միլիոն տոննա նավթ, ավելի քան 14 միլիոն տոննա պողպատ, նույն քանակությամբ գլանվածք, ավելի քան 850 միլիոն ռուբլու սարքեր և ավտոմատացման միջոցներ, ավելի քան 70 հազար մետաղահատ հաստոց, 79 հազար տրակտոր, 16 հազար հացահատիկի կոմբայն, 14 հազար էքսկավատոր, 4 միլիոն հատ ավտոդող և այլն։

Զգալի նվաճումներ կան նաև գյուղատնտեսության զարգացման բնագավառում։ Վերջին տասը տարում պարտիան մեծ աշխատանք կատարեց գյուղատնտեսության վերելքի ուղղությամբ։ Դրա շնորհիվ ավելացել է գյուղատնտեսական մթերքների արտադրությունը։ Հանրային անասնապահության զարգացման, նրա ապրանքայնության բարձրացման հիման վրա մսի պետական գնումներն այդ ժամանակամիջոցում 3,6 միլիոն տոննայից հասան 9,3 միլիոն տոննայի, կաթինը՝ 10,6 միլիոն տոննայից՝ 28,5 միլիոն տոննայի։

Չնայած այն հանգամանքին, որ 1963 թվականը գյուղատնտեսության համար ծայրահեղորեն աննպաստ էր, միլիոնավոր կոլտնտեսականների, սովխոզների բանվորների և մասնագետների անձնվեր աշխատանքի շնորհիվ մթերվեց 2 միլիարդ 735 միլիոն փութ հացահատիկ, կամ 836 միլիոն փթով ավելի, քան 1953 թվականին, մթերվեց 41,4 միլիոն տոննա շաքարի ճակնդեղ, կամ 1953 թվականի համեմատությամբ գրեթե երկու անգամ շատ։ Հավաքվեց բոլոր տարիների համար

ռեկորդային քանակությամբ բամբակ՝ 5 միլիոն 205 հազար տոննա։

Խոշոր փոփոխություններ են տեղի ունեցել գյուղատնտեսության բուն արտադրա-տնտեսական բազայի մեջ։ Եթե 1953 թվականին մենք ունեինք մեկ միլիոն 239 հազար տրակտոր, ապա այժմ դրանց թիվը հասնում է երկու միլիոն 600 հազարի, հացահատիկի կոմբայն՝ համապատասխանաբար 318 հազար և 533 հազար։ Էլեկտրաէներգիայի օգտագործումը երկու միլիարդ 742 միլիոն կիլովատ-ժամից հասել է 17 միլիարդ կիլովատ-ժամի։ Առաջիկայում ավելի բարձր զարգացման կհասնի սոցիալիստական գյուղատնտեսությունը։ ՍՄԿԿ Կենտկոմի փետրվարյան պլենումի որոշմամբ մոտակա տարիներին հացահատիկի արտադրությունն ավելանալու է յոթ միլիարդ փթով, այսինքն հացահատիկի համախառն բերքը մինչև 1970 թվականը հասցվելու է 14—16 միլիարդ փթի։

Այժմ մեր երկրում վիթխարի աշխատանքներ են կատարվում գյուղատնտեսության ինտենսիվացման ուղղությամբ։ Ամեն միջոց գործադրվում է, որպեսզի հողի յուրաքանչյուր հեկտարից ստացվի ավելի շատ արտադրանք, մեքենայացման ու քիմիացման հիման վրա բարձրացվի աշխատանքի արտադրողականությունը, իջեցվի արտադրանքի ինքնարժեքը, արտադրանքի մեկ միավորին ընկնող աշխատանքի ու միջոցների նվազագույն ծախսումներով ստացվի ավելի շատ հացահատիկ, միս, կաթ և այլ մթերքներ։

Ընդլայնելով ժողովրդական սպառման ապրանքների և գյուղատնտեսական մթերքների արտադրությունը, լայն հնարավորություն կստեղծվի ավելի բարձրացնել ժողովրդի նյութական բարեկեցությունը, որը սոցիալիզմի օրենքն է։

Ներկայումս, ինչպես միշտ, կոմունիստական պարտիան և սովետական պետությունն իրենց ամբողջ գործունեությունը նվիրում են ժողովրդի բարօրությանը։ Անցած հինգ տարում, ամբողջությամբ վերցրած, բոլոր աշխատավորների ռեալ եկամուտները, մեկ աշխատողի հաշվով, աճեցին 20 տոկոսով, իսկ անցյալ տարի ՍՍՌՄ հանրային համախառն արտադրանքը, այսինքն՝ նյութական արտադրության բոլոր ճյուղերի ընդհանուր արտադրանքը, 1962 թվականի համեմատությամբ, ավելացավ 5 տոկոսով։ Անցյալ տարի, ինչպես և նախորդ տարիներին, սպառման հանրային ֆոնդերի հաշվին



ապահովվել է ձրի ուսուցումը և բուժսպասարկումը, հիվանդության նպաստի, հղիության ու ծննդաբերության արձակուրդների և հերթական արձակուրդների վճարը, կենսաթոշակների և բազմազավակ ու միայնակ մայրերի նպաստների վճարումը։

Բնակչությանը տրված վերը հիշված և մյուս արտոնությունների ծախսերը 1963 թվականին կազմել են 34,5 միլիարդ ռուբլի, 1962 թվականի 31,9 միլիարդ ռուբլու փոխարեն։ Հանրային ֆոնդերի հաշվին ապահովվել են առողջապահության մոտ 4 միլիոն աշխատողների և լուսավորության ու կուլտուրայի 6 միլիոն աշխատողների պահպանության ծախսերը։ Պետության հաշվին և մասամբ կոլտնտեսությունների հաշվին կենսաթոշակ է տրվել 26 միլիոն կենսաթոշակառուների։ Բարձրագույն, միջնակարգ մասնագիտական, պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնական հաստատությունների և դպրոցների ավելի քան 5 միլիոն սովորողներ ապահովվել են թոշակով ու հանրակացարանով։

1963 թվականի տվյալներով ավելի քան 64 միլիոն մարդ կամ երկրի բնակչության մեկ երրորդ մասը (չհաշված նախադպրոցական հասակի երեխաները) ընդգրկված են ուսուցման տարբեր ձևերում։ Երկրի բարձրագույն ուսումնական հաստատություններում սովորում են 3,3 միլիոն մարդ։

Աշխատավորների բնակարանային պահանջները բավարարելու նպատակով խոշոր շինարարական աշխատանք է կատարվել մեր երկրում։ Միայն անցյալ տարի քաղաքներում և բանվորական ավաններում պետական միջոցների, ինչպես նաև բնակչության միջոցների հաշվին և պետական վարկի օգնությամբ շահագործման հանձնվեցին ավելի քան 77 միլիոն քառակուսի մետր ընդհանուր տարածությամբ բնակելի տներ կամ մոտ երկու միլիոն նոր բարեկարգ բնակարան։ Բացի դրանից, գյուղական վայրերում կոլտնտեսականներն ու գյուղական ինտելիգենցիան պետական վարկի օգնությամբ կառուցեցին մոտ 400 հազար բնակելի տուն։ Անցյալ տարի երկրում նոր բնակարան ստացան կամ նախկինում կառուցված տներում բնակարանային պայմանները բարելավեցին 11 միլիոն մարդ։

Վերջին տասը տարում քաղաքներում և բանվորական ավաններում կառուցվել է ավելի քան 17 միլիոն բնակարան, իսկ գյուղական վայրերում՝ մոտ 6 միլիոն բնակելի տուն։ Տասնամյակի ընթացքում նոր տներ են տե-

ղափոխվել և իրենց բնակարանային-պայմանները բարելավել 108 միլիոն մարդ։

Մեր երկրում տարեցտարի աճում է ազգային եկամուտը, որը սովետական ժողովրդի նյութական բարեկեցության աղբյուրն է։ 1953—1962 թվականների ընթացքում ՍՍՌՄ ազգային եկամուտն աճել է 2,4 անգամ, իսկ բնակչության մեկ շնչի հաշվով այն կրկնապատկվել է։ Նույն ժամանակամիջոցում բնակչության մեկ շնչի հաշվով ԱՄՆ-ում ազգային եկամուտը հազիվ 10 տոկոսով է ավելացել։ Եթե մեր երկրում վերջին հինգ տարում բոլոր աշխատավորների ռեալ եկամուտները մեկ աշխատողի հաշվով աճեցին 20 տոկոսով, ապա ԱՄՆ-ում 9 տարվա ընթացքում աշխատավորների ռեալ եկամուտները (մեկ ընտանիքի հաշվով) ավելացել է ընդամենը 5 տոկոսով։

1964 թվականի մայիսմեկյան տոնը մեծ հաջողություններով են նշում նաև Սովետական Հայաստանի աշխատավորները։ Ահա 44 տարուց ավելի է, ինչ Հայաստանը թոթափելով շահագործողների ծանր լուծը, կանգնած է լենինյան ուղու վրա և կոմունիստական պարտիայի անդուլ հոգատարության շնորհիվ դարձել է Սովետական Միության զարգացած ռեսպուբլիկաներից մեկը։ Անչափ մեծ են մեր հաջողությունները արդյունաբերության, գյուղատնտեսության, գիտության, կուլտուրայի զարգացման բնագավառներում։

Սովետական Հայաստանի աշխատավորները կենսագործելով պարտիայի XXII համագումարի, ՍՄԿՊ Կենտկոմի պլենումների որոշումները, աչքի ընկնող նվաճումների հասան յոթնամյակի հինգերորդ տարում։ Միայն 1963 թվականին ռեսպուբլիկայի արդյունաբերության աշխատողները համախառն արտադրանքի թողարկման տարեկան պլանը կատարեցին 101,9 տոկոսով։ 1962 թվականի համեմատությամբ, 1963 թվականին համախառն արտադրանքի աճը կազմեց 9,4 տոկոս։

Տարեցտարի աճում է մեր ռեսպուբլիկայի արդյունաբերական արտադրանքի, այն էլ գլխավորապես բարդ մեքենաների ու սարքերի արտահանությունը։ Բավական է ասել, որ այժմ Սովետական Հայաստանի ձեռնարկությունների դրոշմը կրող 100 անուն արդյունաբերական արտադրանք է արտահանվում աշխարհի 57 երկրներ, ինչպես, օրինակ, Անգլիա, Ֆրանսիա, Ճապոնիա, Իտալիա, Բելգիա և այլն։

Բուռն թափով զարգանում է Սովետական Հայաստանի



տանի քիմիական արդյունաբերությունը։ Յոթնամյակի անցած հինգ տարում ռեսպուբլիկայի քիմիական արդյունաբերության արտադրանքի արտադրությունն աճել է ավելի քան երկու անգամ։

Մեծ վերելք է ապրում Սովետական Հայաստանի գյուղատնտեսությունը։ Վերջին տասը տարում մեր ռեսպուբլիկայի գյուղատնտեսության աշխատողները շաքարի ճակնդեղի արտադրությունն ավելացրել են 1,6 անգամ, բանջարեղենինն ու բոստանինը՝ 2, խաղողինը՝ 3,4, պտղինը՝ 1,6 անգամ և այլն։

Մեր գյուղատնտեսության աշխատողները պարտավորվել են 1964 թվականին արտադրել 268 հազար տոննա հացահատիկ, 110 հազար տոննա շաքարի ճակնդեղ, 13 հազար տոննա ծխախոտ, 196 հազար տոննա բանջարեղեն, 191 հազար տոննա կարտոֆիլ, 207 հազար տոննա խաղող, 59 հազար տոննա պտուղ, 40 հազար տոննա միս, 338 հազար տոննա կաթ, 3,4 հազար տոննա բուրդ, 192 միլիոն հատ ձու։

Ինչպես անցյալ տարի, այնպես էլ այս տարի, ՀԿՊ XXII համագումարի որոշումներից հետո, լայնորեն շարունակվում է սփյուռքահայերի հայրենադարձությունը։ 1962—1963 թվականներին Իրանից, Կիպրոսից, Արաբական Միացյալ Ռեսպուբլիկայից, Հունաստանից և այլ երկրներից մեզ մոտ են եկել արդեն ավելի քան երեք հազար հայեր։ Մայր հայրենիքը մեծ հոգատարություն է ցուցաբերում իր նոր քաղաքացիների նկատմամբ։ Սովետական Հայաստան եկած մեր հայրենակիցներն աշխատում են գործարաններում, ֆաբրիկաներում և հիմնարկներում։ Նրանց երեխաները տեղավորվել են դպրոցներում, մանկապարտեզներում և մանկամսուրներում, սովորում են բուհերում։ Անաշխատունակ քաղաքացիներն ստանում են կենսաթոշակ, իսկ բազմազավակ մայրերը՝ նպաստ։

Աշխատավորների միջազգային համերաշխության օրը՝ Մայիսի մեկը աշխարհի ժողովուրդները նշում են այնպիսի պայմաններում, երբ միջազգային ասպարեզում խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի ուժերը դառնում են ավելի հզոր ու անխորտակելի։

Համաշխարհային սոցիալիստական սիստեմի հեղինակության և ազդեցության աճը, կոմունիստական գաղափարների հաղթանակը, կոմունիստական և բանվորական շարժման նորանոր հաղթանակները կազմում են մեր ժամանակաշրջանի միտքն ու բովանդակությունը։

Համաշխարհային սոցիալիստական սիստեմը հասել է չտեսնված հաջողությունների։ Անցյալ տարի, օրինակ, սոցիալիզմի երկրները արդյունաբերական արտադրանքի ծավալը, 1957 թվականի համեմատությամբ, ավելացրել են 70 տոկոսից ավելի, իսկ կապիտալիստական երկրները՝ 25 տոկոսից էլ պակաս։ Համաշխարհային արդյունաբերական արտադրանքի մեջ սոցիալիստական սիստեմի տեսակարար կշիռը այժմ կազմում է 40 տոկոսից ավելի։ Այսպիսով, տնտեսական զարգացման տեմպերով սոցիալիստական երկրները մոտավորապես երեք անգամով գերազանցում են կապիտալիզմի երկրներին։

Միջազգային շատ բարդ պայմաններում սոցիալիզմ է կառուցում հերոսական Կուբայի ժողովուրդը։ Չնայած ԱՄՆ-ի իմպերիալիստների ստեղծած դժվարություններին, հաջողությամբ է զարգանում Ազատության կղզու ժողովրդական տնտեսությունը։

Այժմ սոցիալիստական երկրների տնտեսական համագործակցությունը մտել է իր զարգացման նոր էտապը։ Լայն զարգացում է ստանում ժողովրդա-տնտեսական պլանների կոորդինացումը։ Համաշխարհային սոցիալիստական սիստեմը, որը կազմվել էր քաղաքական տեսակետից որպես մի միասնական ամբողջություն, այժմ դառնում է նաև այդպիսին տնտեսական բնագավառում։

Սոցիալիստական սիստեմի պետություններն ունեն հիանալի հնարավորություններ իրենց տնտեսության, գիտության ու կուլտուրայի հետագա զարգացման համար։ Տնտեսական փոխօգնության խորհրդի մեջ մտած երկրների արդյունաբերական արտադրանքը մոտավոր հաշվումներով 1980 թվականին, 1961 թվականի համեմատությամբ, կավելանա ավելի քան 6 անգամ, գյուղատնտեսության արտադրանքը՝ 3 անգամ, իսկ ազգային եկամուտը՝ շուրջ 5 անգամ։

Այդ նույն ժամանակաշրջանում, երբ սոցիալիստական երկրները նվաճում են նորանոր հաղթանակներ, կապիտալիստական պետությունների տնտեսությունն ապրում է նոր ցնցումներ։ Այժմ ԱՄՆ-ում արդյունաբերական արտադրությունը դոփում է իր տեղում։ Կապիտալիստական երկրներում խիստ կերպով ավելանում է գործազուրկների թիվը։

Շուրջ երկու միլիարդ մարդ է ապրում ոչ սոցիալիստական երկրներում։ Սակայն նրանցից 700 միլիոնը





մինչև օրս անգրագետ են։ Բնակչության անգրագիտությունը մեծ չափերի է հասնում հատկապես Բոլիվիայում, Պորտուգալիայում, Թուրքիայում և այլն։

Ավելի սարսափելի են կապիտալիստական երկրների աշխատավորների բնակարանային պայմանները։ ԱՄՆ-ի, Անգլիայի, Ֆրանսիայի, Իսպանիայի, Պորտուգալիայի, Իտալիայի, Ճապոնիայի, Հունաստանի և այլ կապիտալիստական երկրների խոշոր քաղաքների հետնախորշերում ապրող աշխատավորները մեծ թիվ են կազմում։ Հետնախորշերում ապրող երեխաների մահացությունը հասնում է մեծ չափերի։ Իսկ ընդհանրապես հետնախորշերի բնակչությունը տառապում է սոցիալական բազմաթիվ հիվանդություններով։

«Ավելի շատ թալանել, ավելի շատ կորզել աշխատավորներից»— ահա կապիտալիստական աշխարհի տերերի բարոյական «սկզբունքը»։ Հարկային թալանը սովորական երևույթ է դարձել։ Կապիտալիստական աշխարհում, հատկապես ԱՄՆ-ում, աշխատավորներից գանձվում են տասնյակ տեսակի հարկեր։ Հարկ է գանձվում նույնիսկ հաշմանդամներին ու ծերերին տրվող ողորմելի թոշակից։

Ամերիկյան իմպերիալիստները գազանային շահագործման ենթարկելով աշխատավորներին, նրանց մեծ մասին հասցրել են աղքատության։

Այս տարվա հունվարի 8-ին պրեզիդենտ Լ. Ջոնսոնը ստիպված եղավ հայտարարել, որ «աղքատությունը ԱՄՆ-ում ազգային պրոբլեմ է»։ Նա պատերազմ հայտարարեց աղքատության դեմ։ Վերջերս, ամերիկյան «Սաթըրդեյ իվնինգ պոստ» ամսագրում նշվեց այն մասին, որ ԱՄՆ-ում 36 միլիոն մարդ գտնվում է ծայրահեղ աղքատության մեջ, որ 5 ամերիկացիներից մեկը չի կարող ուտել այնքան, որ կշտանա։

Գործազրկությունը տանջում է միլիոնավոր ամերիկացիների։ 1961 թվականին, ոչ լրիվ տվյալներով, երկրում կային միայն 6 միլիոն լրիվ գործազուրկներ, իսկ 1962 թվականին գործազուրկների և կիսագործազուրկների թիվը հասավ 14 միլիոնի։ 1963 թվականին դրությունը ոչնչով չբարելավվեց։ Երկրում կար 4 միլիոն 500 հազար պաշտոնապես գրանցված գործազուրկներ, որոնց թիվը ոչ թե պակասում, այլ ավելանում է։

Ամերիկյան իմպերիալիստների կողմից ծեծկված միլիոնավոր աշխատավորներ ատոմային այս դարում գրել կարդալ չգիտեն։ Պաշտոնական տվյալներով ներկա-

յումս ԱՄՆ-ի բնակչության 2,2 տոկոսը անգրագետ է։ Ավելի քան 11 միլիոն մարդիկ ի վիճակի չեն նամակ գրելու։ Միջնակարգ դպրոցների աշակերտության 70—75 տոկոսը թողնում է ուսումը դպրոցը չավարտած։ Աշխատավորները զրկված են բարձրագույն կրթություն ստանալուց, որովհետև ուսման վարձը շատ բարձր է։

Ուսման հարցում անմարդկային վերաբերմունք գոյություն ունի նեգրերի նկատմամբ։ ԱՄՆ-ի հարավային գրեթե բոլոր նահանգներում սևամորթներին թույլ չեն տալիս սովորել այն դպրոցներում, որտեղ սովորում են սպիտակամորթները։

Անմխիթար վիճակում է գտնվում ամերիկյան աշխատավորների բժշկական սպասարկումը։ ԱՄՆ-ում շատ բարձր է բուժման վարձը։ Բժշկին տուն հրավիրելը արժե 7—12 դոլար, իսկ հիվանդանոցում մեկ օր բուժվելը՝ ավելի քան 35 դոլար։

Բնակարանային սարսափելի պայմաններում են գտնվում ամերիկյան աշխատավորները։ Նրանցից ավելի քան 22 միլիոն մարդ ապրում են հետնախորշերում։ Ընտանիքներին սպասարկող ասոցիացիան, հետազոտելով բնակարանային դրությունը ԱՄՆ-ի մի շարք խոշոր քաղաքներում, հաստատել է, որ միայն Նյու-Յորքում մոտ 260 հազար ընտանիք տուն չունեն, իսկ 500 հազար ընտանիք բնակվում են հետնախորշերում։

Դասակարգային ճնշման ահավոր պայմաններում կապիտալիստական երկրների բանվոր դասակարգը անխոնջ պայքար է մղում իր իրավունքների համար, նյութական դրության բարելավման համար։

Այսօր իմպերիալիզմի երկրները ցնցվում են պրոլետարիատի հուժկու հարվածներից։ Համաշխարհային զարգացման արդի բնորոշ առանձնահատկություններից մեկը հանդիսանում է կապիտալի երկրներում դասակարգային պայքարի սրումը։ Հենց այս բանում է իր ողջ ուժով երևան գալիս բանվոր դասակարգի ռևոլյուցիոն հզորության աճը, նրա ազդեցությունը ժողովրդական մասսաների վրա։ Ավելի հզոր ու հաճախակի են դառնում համազգային նշանակություն ունեցող գործադուլները։ Միայն վերջին 4 տարիների ընթացքում 40 պետություններում տեղի են ունեցել այդպիսի 80 գործադուլ։ Աշխատանքի մարդկանց ընդհանուր գործադուլներն առանձնապես կազմակերպված ու վճռականությամբ են ընթանում Ֆրանսիայում, Բելգիայում, Իտալիայում, Ճապոնիայում և Բրազիլիայում։



1963 թվականի փետրվարին հաղթանակով ավարտվեց Իտալիայի մետաղագործների գործադուլը, որին մասնակցում էր մեկ միլիոն մարդ։ Ամբողջ 1963 թվականի ընթացքում ԱՄՆ-ում կատարվել է 3.400 գործադուլ, որին մասնակցել է ավելի քան մեկ միլիոն 30 հազար մարդ։

1964 թվականի մարտի 18-ին Փարիզի կոմունայի հիշատակի օրը Ֆրանսիայում բռնկվեց հուժկու համազգային գործադուլ, որին մասնակցեց 6 միլիոն մարդ։ Խոսելով այդ գործադուլի մասին «Լիբերասյոն» թերթը գրում է, որ մարտի 18-ի բանվոր դասակարգի ելույթը գերազանցում է այն բոլորին, ինչ տեղի է ունեցել վերջին տարիներին։

1964 թվականի փետրվար-մարտին 33 օր շարունակվող Նյու-Յորքի նավահանգստի 3.000 բանվորների գործադուլը ավարտվեց հաղթանակով։ Ձեռնարկատերերը բավարարեցին գործադուլավորների պահանջները աշխատավարձը բարձրացնելու վերաբերյալ։

Օրեցօր աճում, ավելի կազմակերպված բնույթ է ստանում բանվոր դասակարգի գործադուլային պայքարը։ Եթե 1954 թվականին գործադուլային պայքարին մասնակցել են միայն 14 միլիոն բանվոր, 1958 թվականին՝ 25—27 միլիոն, ապա 1962 թվականին այդ թիվը հասավ 56—62 միլիոնի։ Բնորոշ է, որ աճել է քաղաքական գործադուլների մասնակիցների թիվը։ 1958 թվականին քաղաքական գործադուլների մասնակիցները կազմում էին բոլոր գործադուլավորների միայն 44 տոկոսը, իսկ 1962 թվականին այն կազմել է 62—64 տոկոսը։

* * *

Այս օրերին մեծ Լենինի օրինակով ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն, հավատարիմ լենինյան ընկ. Ն. Ս. Խրուշչովի գլխավորությամբ, մեր ամբողջ պարտիան վճռական պայքար են ծավալել միջազգային կոմունիստական շարժման միասնության համար։ Վերջերս ՍՄԿԿ Կենտկոմի պլենումը, լսելով և քննարկելով ՍՄԿԿ Կենտկոմի նախագահության անդամ, Կենտկոմի քարտուղար ընկ. Մ. Ա. Սուսլովի հաղորդումը՝ «Միջազգային կոմունիստական շարժման համախմբվածության համար ՍՄԿԿ-ի պայքարի մասին», լուրջ մտահոգություն արտահայտեց Չինաստանի կոմունիստական պարտիայի ղեկավարության պառակտիչ գործողու-

թյունների առթիվ, որոնք հսկայական վնաս են հասցնում սոցիալիստական համագործակցությանը, միջազգային ամբողջ կոմունիստական ու բանվորական շարժմանը։

Սովետական Միության կոմունիստական պարտիան,— ասված է որոշման մեջ,— գիտակցելով կոմունիստական շարժման միասնության ու համախմբվածության պատմական կարևորությունը, վերջին ժամանակներս նոր քայլեր ձեռնարկեց հաղթահարելու կամ սկզբնական շրջանում թեկուզ սահմանափակելու ՍՄԿՊ-ի և մյուս եղբայրական պարտիաների հետ Չինաստանի կոմպարտիայի ղեկավարության տարաձայնությունները, ամրապնդելու ՍՍՌՄ-ի և ՉԺՌ-ի տնտեսական ու քաղաքական համագործակցությունը։ Տարաձայնությունների սրման պրոցեսը կանգնեցնելու փորձեր ձեռնարկվեցին նաև մարքս-լենինյան մյուս պարտիաների կողմից։ Այնուհետև, ՍՄԿՊ Կենտկոմի պլենումը ափսոսանքով արձանագրեց, որ Չինաստանի կոմպարտիայի ղեկավարությունը չարձագանքեց այդ նախաձեռնությանը, պատասխան չտվեց ՍՄԿՊ Կենտկոմի նամակին և չդադարեցրեց բացահայտ բանավեճը, ընդհակառակը, նա ուժեղացրեց կամպանիան՝ ուղղված կոմունիստական շարժման գլխավոր գծի դեմ, որը սահմանվել է 1957 և 1960 թվականների խորհրդակցությունների կողմից։

Խոսքով հավատացնելով, թե հավատարիմ են մարքսիզմ-լենինիզմին, քողարկվելով մարքս-լենինյան պարտիաների կարծեցյալ ռևիզիոնիզմի դեմ պայքարելու դրոշակով, Չինաստանի կոմպարտիայի ղեկավարները գրոհ սկսեցին այն հիմնական, տեսական ու քաղաքական դրույթների վրա, որոնցով արդի էտապում առաջնորդվում է կոմունիստական շարժումը։

Մեր դարաշրջանի պայմանների համեմատ մարքսիզմ-լենինիզմի սկզբունքները ստեղծագործաբար կիրառելու հիման վրա եղբայրական պարտիաների կոլեկտիվ ջանքերով մշակված նոր գնահատականները և արված հետևությունները՝ համաշխարհային սոցիալիստական սիստեմի դերի մասին, սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման ուղիների մասին, համաշխարհային պատերազմը կանխելու հնարավորության մասին, սոցիալական տարբեր կարգ ունեցող երկրների խա-



ղաղ գոյակցության մասին, անհատի պաշտամունքի գաղափարախոսության ու պրակտիկայի դեմ պայքարելու անհրաժեշտության մասին, զարգացած կապիտալիստական պետություններում և գաղութատիրությունից ազատագրված երկրներում սոցիալիզմին անցնելու ձևերի մասին,— այս ամենը չինական ղեկավարները խեղաթյուրում են։

Ստրատեգիայի և տակտիկայի բոլոր հիմնական հարցերում հեռանալով համաշխարհային կոմունիստական շարժման լենինյան գծից, չինական ղեկավարները հռչակեցին իրենց կուրսը, որի մեջ միաձուլվում են մանր-բուրժուական ավանտյուրիզմը և մեծապետական շովինիզմը։ Նրանք ըստ էության մի շարք հարցերում գլորվում են տրոցկիստական դիրքերը, զինվում են մարքս-լենինյան պարտիաների դեմ պայքարելու տրոցկիստական մեթոդներով, տարբեր երկրներում կազմակերպում են իրենց կողմնակիցների ֆրակցիոն խմբիկներ։ Չինաստանի կոմպարտիայի ղեկավարությունը փորձում է իր գաղափարական հատուկ պլատֆորմը պարտադրել ամբողջ սոցիալիստական լագերին և համաշխարհային կոմունիստական շարժմանը, միջազգային դեմոկրատական կազմակերպություններին։

Չինական ղեկավարները վերցրել են սովետա-չինական միջպետական հարաբերությունները վատթարացնելու, սովետական ու չին ժողովուրդների բարեկամությունը խարխլելու կուրս։ Մերժելով սովետա-չինական հարաբերությունները նորմալացնելու վերաբերյալ ՍՄԿՊ Կենտկոմի բոլոր առաջարկները, նրանք ուժեղացրել են հակասովետական պրոպագանդան ՉԺՌ-ի ներսում, կոպիտ կերպով միջամտում են Սովետական Միության ներքին գործերին։

ՍՄԿՊ Կենտկոմի պլենումը գտավ, որ սոցիալիզմի համաշխարհային սիստեմի, կոմունիստական շարժման, մարքսիզմ-լենինիզմի անաղարտությունը պաշտպանելու արմատական շահերը պահանջում են գաղափարապես մերկացնել Չինաստանի կոմպարտիայի ղեկավարության հակալենինյան դիրքը, վճռական հակահարված տալ նրանց պառակտիչ գործողություններին։

Լիովին ու միահամուռ հավանություն տալով ՍՄԿՊ Կենտկոմի նախագահության, ՍՄԿՊ Կենտկոմի առա-

ջին քարտուղար ընկեր Ն. Ս. Խրուշչովի քաղաքական ու պրակտիկ գործունեությանը, որի նպատակն է ՍՍՌՄ-ում կառուցել կոմունիստական հասարակարգ, ապահովել խաղաղության, դեմոկրատիայի, ազգային անկախության ու սոցիալիզմի գործի հաղթանակը, ամրապնդել մարքս-լենինյան պարտիաների համախմբվածությունը, ՍՄԿԿ Կենտկոմի պլենումը Կենտկոմի նախագահությանը հանձնարարեց այսուհետև ևս հաստատակամորեն պաշտպանել համաշխարհային կոմունիստական շարժման գլխավոր գիծը, հասնել արդիականության բոլոր ռևոլյուցիոն ուժերի միասնության ամրապնդման։

Մեր պարտիան ընթանում է և այսուհետև էլ ընթանալու է լենինյան ստուգված ուղիով, և ոչ ոք ու երբեք ՍՄԿԿ-ին չի կարող շեղել այդ կուրսից՝ XX և XXII համագումարների կուրսից։

Ձնայած, որ չինական ղեկավարները իրենց պառակտիչ գործողություններով հեռու են գնացել, ՍՄԿԿ Կենտկոմի պլենումը, ամեն ինչից բարձր դասելով համաշխարհային կոմունիստական շարժման միասնության շահերը, պատրաստակամություն է հայտնում այսուհետև ևս ջանքեր գործադրել նորմալացնելու ՍՄԿԿ-ի և Չինաստանի կոմպարտիայի հարաբերությունները։ Եթե Չինաստանի կոմպարտիայի ղեկավարները վերջնականապես չեն կորցրել իրենց ինտերնացիոնալ պատասխանատվության գիտակցումը, նրանք պետք է վերջապես հասկանան, որ իրենց գործողություններով կոմունիստական ու բանվորական պարտիաների ուժերը և ուշադրությունը շեղում են սոցիալիստական շինարարության հրատապ խնդիրների լուծումից, դժվարացնում են իմպերիալիզմի դեմ մղվող պայքարը, վնաս են հասցնում ամբողջ հակաիմպերիալիստական ճակատին։

«ՍՄԿԿ Կենտկոմի պլենումը,— նշված է որոշման վերջում,— հաստատ վստահություն է հայտնում, որ համաշխարհային կոմունիստական շարժումը կհաղթահարի գոյություն ունեցող դժվարությունները, իր շարքերը է՛լ ավելի սերտորեն կհամախմբի Մարքսի-Էնգելսի-Լենինի դրոշի ներքո, նոր հաջողությունների կհասնի բանվոր դասակարգի մեծ գործի, ժողովուրդների խաղաղության և անվտանգության գործի՝ կոմունիզմի հաղթանակի համար մղվող պայքարում»։

---

# ՄԱՄՈՒԼԻ ՕՐԸ

Մայիսի 5-ը սովետական մամուլի օրն է։ Բոլշևիկյան մամուլի պատմությունն անխզելիորեն կապված է մեր պարտիայի հերոսական պատմության հետ, Հոկտեմբերյան մեծ ռևոլյուցիայի, սովետական պետության ստեղծման ու զարգացման, սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման համար մեր երկրի աշխատավորների հերոսական պայքարի հետ։

Վ. Ի. Լենինը ի դեմս «Պրավդայի» տեսավ «առաջին ծիծեռնակը» այն գարնան, երբ ամբողջ Ռուսաստանը կծածկվի բանվորական թերթեր ունեցող բանվորական կազմակերպությունների ցանցով։

Լենինյան ծիծեռնակի առաջին թռիչքն ավետեց բոլշևիկյան մամուլի գարունը։

«Պրավդայի» 50-ամյակին նվիրված հանդիսավոր նիստում ընկեր Ն. Ս. Խրուշչովն ասաց. «Հիսուն տարում «Պրավդան» կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ աճեցրել է և այժմ իր հետևից տանում է թերթերի ու հանդեսների մի այնպիսի հզոր երամ, որն իր ուժեղ թևերի վրա աշխարհի բոլոր անկյուններն է տանում ճշմարտությունը մեր երկրում կոմունիզմի հաղթանակների մասին»։

Սովետական մամուլը աշխարհի ամենաժողովրդական մամուլն է։ Նա հազարավոր թելերով կապված է աշխատավորական լայն մասսաների հետ, արտահայտում է նրանց շահերն ու ձգտումները, նպատակներն ու տրամադրությունները։

Մամուլը և ռադիոն վաղուց մտել են սովետական մարդու կենցաղի մեջ։ Ստալինի անձի պաշտամունքի հետևանքների հաղթահարման և պարտիական կյանքի լենինյան նորմաների ու կոլեկտիվ ղեկավարման սկզբունքների վերականգնման շնորհիվ, մեր մամուլը դարձավ ավելի մասսայական, ավելի մոտեցավ կյանքին, նյութական բարիքների արտադրությանը, ավելի բարձրացավ ընթերցողների վրա նրա ներգործության ուժը։

Ռեսպուբլիկայի թերթերն ու ամսագրերը, ռադիոն և հեռուստատեսությունը մասսաներին են հասցնում պարտիայի խոսքը, մոբիլիզացնում քաղաքի և գյուղի աշխատավորների ուժերը, նրանց ստեղծագործական անսպառ եռանդը՝ կոմունիզմի նյութատեխնիկական

բազայի ստեղծման համար մղվող համաժողովրդական պայքարում։ Մեր մամուլի օրգանները վերջին շրջանում սկսել են հաճախակի անդրադառնալ աշխատավորների կոմունիստական դաստիարակության, նոր մարդու ձևավորման հարցերին, աշխուժորեն լուսաբանել ռեսպուբլիկայի պարտկազմակերպությունների գաղափարական կյանքը։

Սովետական մամուլի գլխավոր թեման կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման, ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի աննախընթաց զարգացման, սոցիալիստական մրցությամբ ստանձնած պարտավորությունների կատարման հարցերի լուսաբանումն է։

Ռեսպուբլիկայի թերթերն ու ամսագրերը հաջողությամբ են կատարում այդ մեծ և պատասխանատու խնդիրը, մոբիլիզացնում են արդյունաբերական ձեռնարկությունների և կոլտնտեսային գյուղի աշխատավորներին՝ կոմունիստական շինարարության պլանները հաջող կատարելու համար, սիստեմատիկաբար լուսաբանում են առաջավոր մարդկանց ստեղծագործական նախաձեռնությունը, օգտագործում են բազմազան միջոցներ և ձևեր, որպեսզի լրիվ և խոր կերպով արտացոլվի արտադրական այն բուռն վերելքը և աշխատանքային խանդավառությունը, որ տիրում են ռեսպուբլիկայի ձեռնարկություններում ու կոլտնտեսային դաշտերում։

Թերթերն ու ամսագրերը սկսել են բազմակողմանիորեն լուսաբանել արդյունաբերական ձեռնարկությունների, կոլտնտեսությունների, սովխոզների առաջավոր փորձը՝ տեխնիկական առաջադիմության, աշխատանքի արտադրողականության բարձրացման, ինքնարժեքի իջեցման, արտադրանքի որակի բարելավման, գիտության նվաճումներն արտադրության մեջ ներդնելու գործում։ Որ ռեսպուբլիկայի արդյունաբերական ձեռնարկությունները հաջողությամբ կատարում են առաջադրանքները, բարելավում տեխնիկատնտեսական ցուցանիշները, նոր բնագծեր նվաճում կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման գործում, դրանում իրենց համեստ բաժինն ունեն մեր թերթերը։

ՍՄԿՊ Կենտկոմի հունիսյան պլենումը սովետական մամուլի, ռադիոյի և հեռուստատեսության հիմ-



նական խնդիրը համարեց՝ սովետական մարդկանց մարքս-լենինյան աշխարհայացքի ու կոմունիստական բարոյականության ձևավորումը, ժողովրդա-տնտեսական պլանների կատարման, աշխատանքի արտադրողականության բարձրացման, տնտեսության պարտիական ղեկավարության բարելավման, կուլտուրական շինարարության պրոբլեմների լուծման ասպարեզում պարտիայի ու սովետական ամբողջ ժողովրդի աշխատանքի սիստեմատիկ և խոր լուսաբանումը, դրական օրինակների լայն տարածումը։

Պարտիայի Կենտկոմի այս պահանջները գործունեության մարտական ծրագիր են մեր մամուլի համար։

Ռեսպուբլիկայի մամուլը անգնահատելի աշխատանք է կատարում ՍՄԿՊ ծրագրի, Կենտկոմի պլենումների առաջադրած տնտեսական, քաղաքական և գաղափարական ակտուալ պրոբլեմների համոզիչ և մատչելի պրոպագանդման, կոմունիստական շինարարության խնդիրները հաջողությամբ լուծելու համար աշխատավորության ջանքերի, նյութական և հոգևոր բոլոր ուժերի մոբիլիզացման գործում։

Մեր մամուլի առաջնահերթ խնդիրներից մեկն էլ նոր մարդու դաստիարակության հարցերի լուսաբանումն է։ Թերթերը, ամսագրերը, ռադիոն որոշակի ուշադրություն են նվիրում կոմունիզմ կառուցողների բարոյական կոդեքսի դրույթների պրոպագանդմանը, տպագրում են տեսական-պրոպագանդիստական հոդվածներ, ուր բարձրացվում են աշխատավորների կոմունիստական դաստիարակության, նոր մարդու ձևավորման բազմաթիվ պրոբլեմներ։

Մամուլը հատուկ ուշադրություն է դարձնում պրոլետարական ինտերնացիոնալիզմի, ՍՍՌՄ ժողովուրդների բարեկամության հարցերի լուսաբանմանը։ Տպագրվում են հատուկ համարներ՝ նվիրված եղբայրական ռեսպուբլիկաներին, հոդվածներ, ակնարկներ և այլ նյութեր։

Թերթերը սիստեմատիկաբար նյութեր են տպագրում Անդրկովկասյան խոշոր տնտեսական շրջանի երեք ռեսպուբլիկաների տնտեսական և կուլտուրական համագործակցության մասին։

ՍՄԿՊ Կենտկոմի հունիսյան պլենումը գաղափարական ճակատի հարվածային ուժերի՝ մամուլի, ռադիոյի, կինոյի, հեռուստատեսության հիմնական խնդիրներից մեկը համարեց լճացման և քարացածության, բյուրոկ-

բատիզմի և հակահասարակական մյուս երևույթների դեմ անհաշտ պայքարի, սկզբունքային քննադատության և ինքնաքննադատության ծավալումը։

«... Մենք պետք է հզորագույն դիտապակու տակ, քննադատության կրակի տակ պահենք այն ամենը, ինչը խանգարում է մեր առաջընթացին»,— ասել է Ն. Ս. Խրուշչովը։

Ռեսպուբլիկայի թերթերը ժամանակին և միանգամայն ճիշտ քննադատում են կոմունիստական շինարարության այս կամ այն տեղամասում եղած թերությունները։ Մամուլի օրգանները պլանաչափ աշխատանք են կատարում ավելի լայն ակտիվ ստեղծելու, արդյունաբերության և գյուղատնտեսության մասնագետներին, արտադրության առաջավորներին ներգրավելու ուղղությամբ։ Արդյունաբերության, տրանսպորտի, շինարարության, գյուղատնտեսության բնագավառում եղած թերությունների բացահայտմանն ու վերացմանը, նրանց աշխատանքի վրա հասարակական վերահսկողության իրագործմանը մեծապես նպաստում են մասսայական ռեյդերի կազմակերպումը, այդ գործում արտադրության առաջավորների թղթակցական լայն ակտիվի ընդգրկմամբ։ Մեր մամուլը պրոպագանդում է այն ամենը, լավագույնը, առաջավորը, նորը, որ ծնվում է մեր կյանքում։

Աշխատավորների նամակները մեր մամուլի մասսայականության պերճախոս վկայությունն են։ 1963 թըվականին ռեսպուբլիկական թերթերի խմբագրությունները ստացել են մոտ 60.000 նամակ, որոնց գրեթե կեսը հրապարակվել է թերթերում, մի մասն էլ ընթացք է ստացել համապատասխան կազմակերպությունների միջոցով։

Մի շարք թերթերում ստեղծված են հասարակական հիմունքներով աշխատող բազմաթիվ բաժիններ, որտեղ ընդգրկված են հին բոլշևիկներ, անհատական կենսաթոշակառուներ, զորացրված սպաներ, որոնք ակտիվորեն մասնակցում են կոլեկտիվ թղթակցությունների, բանգյուղթղթակիցների ռեյդերի կազմակերպմանը։

Այնուամենայնիվ, կատարված աշխատանքը դեռևս ետ է մնում պարտիայի առաջադրած խնդիրների պահանջներից։ Թերթերի ու ամսագրերի զգալի մասը առայժմ անբավարար է լուսաբանում ռեսպուբլիկայի էկոնոմիկայի և կուլտուրայի զարգացման արմատական հարցերը, նրանց էջերում վառ կերպով չի երևում սովե-



տական քաղաքացին՝ կոմունիզմ կառուցող մարդը՝ իր ստեղծագործ աշխատանքում, իր հույզերով ու հոգսերով։ Թերթերն ու ամսագրերը խիստ հազվադեպ են տպագրում այնպիսի նյութեր, որոնցում պատկերավոր կերպով ցույց տրվի մեր մարդկանց բնավորության հիանալի գծերը՝ աշխատասիրությունը, նվիրվածությունը հայրենիքին, ժողովուրդների բարեկամության լենինյան գաղափարներին, անհանդուրժողականությունը թերությունների նկատմամբ։

Մեծ քիմիայի համար, գյուղատնտեսության շեշտակի վերելքի համար մղվող պայքարը դարձել է կոմունիստական շինարարության հարվածային ճակատը։ ՍՄԿՊ Կենտկոմի դեկտեմբերյան և փետրվարյան պլենումների որոշումների կենսագործման համար մղվող պայքարում մամուլի աշխատողների տեղը առաջավոր բնագիծն է։

Թերթերը և ռադիոն սիստեմատիկաբար նյութեր են տպագրում քիմիական ինդուստրիայի արագ զարգացման, քիմիայի նվաճումները ժողովրդական տնտեսության մեջ արմատավորելու, կարևոր օբյեկտների շինարարության ընթացքի մասին։

Մեծ ուշադրություն է դարձվում նաև գյուղատնտեսության քիմիացման պրոբլեմներին։ Ռեսպուբլիկական, քաղաքային, միջշրջանային մի շարք թերթեր ստեղծել են հեռակա գյուղատնտեսական դպրոցներ ու համալսարաններ, «Օգնություն ագրոքիմիան ուսումնասիրողներին», «Քիմիական գիտելիքները մասսաներին» կայուն բաժիններ, որոնց նյութերը կենդանի հետաքրքրություն են առաջ բերել ընթերցողների լայն շրջանում։

Արդի պայմաններում, երբ արմատական շրջադարձ է կատարվում դեպի գյուղատնտեսության ինտենսիվացումը, վճռական նշանակություն է ստանում արտադրության մեջ գիտության նվաճումների և առաջավոր փորձի արմատավորման կազմակերպչական աշխատանքը։

«Մեր կազմակերպչական ամբողջ աշխատանքի կենտրոնում,— ասում է ընկեր Ն. Ս. Խրուշչովը,— պետք է գտնվի արտադրության մեջ նորարարների փորձի, գյուղատնտեսական մթերքների արտադրության առաջավոր տեխնոլոգիայի ակտիվ արմատավորումը»։

Յուրաքանչյուր տպագիր օրգան պետք է իր համար հստակորեն սահմանի առաջավոր փորձի համար մըղվող պայքարի իր գլխավոր ուղղությունը, հասնի այն

բանին, որ դրանք կիրառվեն յուրաքանչյուր ձեռնար-կությունում և կառույցում, յուրաքանչյուր կոլտնտեսու-թյունում և սովխոզում:

Այս տարվա գարունը լուրջ քննաշրջան է գյուղի աշ-խատավորների համար: Ռեսպուբլիկայի հողագործները լավ աշխատեցին հողը, մեքենաները, սերմացուն և պա-րարտանյութերը գարնանը նախապատրաստելու հա-մար:

Սկսվել է համաժողովրդական գրոհը՝ գյուղատնտե-սական մթերքների արտադրության շեշտակի վերելքի համար:

Ոտքի հանել և կազմակերպել քաղաքի և գյուղի աշ-խատավորներին, նրանց ջանքերն ուղղել պարտիայի նախանշած պլանների կատարմանը, նրանց պայքարի կոչել կոմունիզմի հաղթանակի համար— սա է մամու-լի աշխատողների շնորհակալ և պատվավոր խնդիրը:

Սովետական մամուլը միշտ եղել և գտնվում է կոմու-նիզմի համար մղվող պայքարի առաջավոր բնագծե-րում: Հավատարմությունը մարքսիզմ-լենինիզմին, ճըշ-մարտացիությունը, բարձր գաղափարայնությունը և սկզբունքայնությունը— մեր մամուլի դրոշն են:

Պարտիան բարձր է գնահատում մամուլը, իբրև ա-մենաճշմարիտ և հեռահար գաղափարական գործիքը, իբրև կոմունիզմ կառուցողների իրոք ժողովրդական ամբիոնը:

«Հենց որ որևէ շարժում պետք է պարզաբանել ու կենսագործել,—ասել է Ն. Ս. Խրուշչովը,—մենք դիմում ենք ձեզ և դուք, իբրև ամենաճշմարիտ շարժափոկը, վերցնում եք պարտիայի որոշումը և տանում մեր ժո-ղովրդի հոծ զանգվածները»:

Թերթի, ամսագրի, ռադիոյի աշխատողները, բոլշե-վիկյան կրքոտությամբ, հրապարակախոսական մար-տական խոսքով սովետական մարդկանց օգնում են պայքարելու կյանքը կոմունիստական հիմունքներով վերակառուցելու համար, մշտապես բացահայտում են ժողովրդի աշխատանքային սխրագործության վեհու-թյունը, սովետական մարդու բարոյական կերպարի գե-ղեցկությունն ու անաղարտությունը, մշտապես հոգում, որ օրեցօր յուրաքանչյուր սովետական կոլեկտիվ, յու-րաքանչյուր մարդ ավելի լավ աշխատի, ավելի մեծ ներ-դրում կատարի կոմունիստական հասարակության ստեղծման գործում:

Խ. ՀՈՎԱԿԻՄՅԱՆ

«Սովետական Հայաստան» թերթի խմբագիր



# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## 1. Աշխատավորների միջազգային համերաշխության օրը

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վ. Ի. ԼԵՆԻՆ—Մայիսի մեկը, *Երկեր, հատոր 7, էջ 243—248, Հայպետհրատ, 1949:*

Վ. Ի. ԼԵՆԻՆ—Մայիսի մեկը, *Երկեր, հատոր 8, էջ 439—448, Հայպետհրատ, 1949:*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ—Հաջողությամբ իրագործել գյուղատնտեսա-կան արտադրության ինտենսիվացման մասին ՍՄԿԿ Կենտկոմի փետրվարյան պլենումի որոշումները, *զեկուցում պարտիական, սո-վետական և գյուղատնտեսական օրգանների ղեկավար աշխատող-ների խորհրդակցությունում, 1964 թվականի փետրվարի 28-ին, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թվականի մարտի 7-ի և 8-ի համար-ներում:*

## 2. Մամուլի օրը

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վ. Ի. ԼԵՆԻՆ—Մեր թերթի բնույթի մասին, *Երկեր, հատոր 28, էջ 106—109, Հայպետհրատ, 1951:*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ—Սովետական մամուլը պետք է լինի ամենա-ուժեղ և ամենադեմոկրատական մամուլը, *ելույթ սովետական ժուռ-նալիստների ընդունելության ժամանակ, տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի նոյեմբերի 18-ի համարում և առանձին գրքույկ, Հայպետհրատ, 1960:*

Բոլշևիկյան «Պրավդա» թերթը, *ՍՄԿԿ պատմություն, էջ 189—197, Հայպետհրատ, 1959:*

## 3. Գարնան գյուղատնտեսական աշխատանքները կատարենք բարձր որակով և սեղմ ժամկետներում

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Գառնին լավ աշխատանքով է գեղեցիկ, *նյութեր տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թվականի մարտի 27-ի համարում:*

Պ. ԱՅՎԱԶՅԱՆ—Ինչպես կազմակերպել ցրտահարված այգիների նոր և խնամքը, *հոդված, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թվականի մարտի 24-ի համարում:*

Ինդեքս՝ 77704

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



## СОДЕРЖАНИЕ



ОТДЕЛ ИДЕОЛОГИЧЕСКОЙ РАБОТЫ

ЦК КП АРМЕНИИ

# Агитатори блокнот

# № 8

# 1964

Խմբագիր՝ Վ. Խ. ԵՆԳԻԲԱՐՅԱՆ

ՎՖ 06080    Պատվեր 305    Տիրաժ 9300

Հանձնված է արտադրության 4/IV 1964 թ.:

Ստորագրված է տպագրության 11/IV 1964 թ.:

ՀՍՍՌ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի Պոլիգրաֆարդյունաբերության Գլխավոր վարչության II տպարան, Երևան, Կնունյանցի № 8:

Գինը 8 կոպ.:

Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿԿ Կենտկոմ, II հարկ, 71-րդ սենյակ, հեռախոս 2—52—78

**Адрес редакции** — Ереван, ЦК КП Армении, II этаж, ком. 71, телефон 2-52-78.